Պրոլետարներ բոլոր երկրների. միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 14 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 33—86։


---

# ՏԱՐԵԿԱՆ ՊԼԱՆԸ ԿԱՏԱՐԵՆՔ ՆՈՅԵՄԲԵՐԻ 7-ԻՆ

*Սովետական Միության աշխատավորներն օր-օրի բարձրացնում են արտադրության տեմպերը, նորանոր հաջողություններ են ձեռք բերում հետպատերազմյան ստալինյան հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցության մեջ։*

*Մեր երկրում հաստատված հիանալի տրադիցիան՝ յուրաքանչյուր ռևոլյուցիոն տոնը նշել արտադրական նորանոր հաղթանակներով, կրկին իր արտացոլումն է գտել երկրի գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվների սոցիալիստական պարտավորությունների մեջ, որոնք հետևելով հերոսական լենինգրադցիների անցյալ տարվա նախաձեռնությանը, այս տարի ևս պարտավորություն են ստանձնել հնգամյակի երրորդ վճռական տարվա արտադրական պլանների կատարումն ավարտել ժամկետից շուտ՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի տարեդարձին։*

ՍՍՌՄ Պետպլանի օրերս հրապարակված հաղորդագրությունը ցույց է տալիս, որ հետպատերազմյան հնգամյակի երրորդ վճռական տարում մեր երկիրը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, անցյալ տարվա համեմատությամբ հասել է զարգացման զգալիորեն ավելի բարձր մակարդակի։ Բավական է ասել, որ ընթացիկ տարվա երկրորդ եռամսյակում Սովետական Միության արդյունաբերության համախառն արտադրանքը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ աճել է 24 տոկոսով, իսկ կապիտալ ներդրումների ծավալն աճել է 26 տոկոսով։

Հաջողությամբ գերակատարված են ծանր ինդուստրիայի՝ մետալուրգիական ու քիմիական արդյունաբերության, մեքենաշինության, ածխի ու նավթի հանույթի, էլեկտրաէներգիայի արտադրության, անտառային արդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության և ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մյուս հիմնական ճյուղերի զարգացման պլանները։

Ծանր ինդուստրիայի ճյուղերի զարգացման բարձր տեմպերը հիմք են հանդիսանում սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման նոր, է՛լ ավելի մեծ հաջողությունների հա-



մար, ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման տեմպերն է՛լ ավելի արագացնելու, սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարելավման համար։

Ամբողջ Սովետական Միության գործարանների ու ֆաբրիկաների աշխատավորներին համահավասար, տարեկան արտադրական պլանները ժամկետից շուտ կատարելու համար ծավալված համաժողովրդական շարժմանն ակտիվ մասնակցում են Հայկական ՍՍՌ արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները, որոնք ծավալելով մասսայական սոցիալիստական մրցությունը, զգալի հաջողություններ են ձեռք բերել առաջին կիսամյակի պլանների կատարման գործում։

1948 թվականի առաջին և երկրորդ եռամսյակներում ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատանքի հանրագումարները վկայում են, որ Հայկական ՍՍՌ ձեռնարկությունների ճնշող մեծամասնության բանվորներն ու բանվորուհիները, ինժեներներն ու տեխնիկները քրտնաջան աշխատանքի հետևանքով բարձրացրել են արտադրության տեմպերը և, հաջողությամբ գերակատարելով առաջին կիսամյակի արտադրական պլ-

վաները, ստեղծել են բոլոր անհրաժեշտ պայմանները պատվով կատարելու համար իրենց պարտավորությունները արդյունաբերական արտադրանքի թողարկման տարեկան ծրագիրը ժամկետից շուտ, մինչև նոյեմբերի 7-ը կատարելու գործում։

Առաջավոր ձեռնարկությունների թվին են պատկանում Դազգահաշինական, Կաբիդի, Ավտոդողերի, Կաբելի, Մուլիտի, Ապակու գործարանների, Մոլոտովի անվան Մանվածքային ֆաբրիկայի, տեղական, սննդի, մսի, կաթի, տեքստիլ արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների կոլեկտիվները։ Ռեսպուբլիկայի ձեռնարկություններում աճել են արտադրության բազմաթիվ նորարարներ, հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար ծավալված սոցիալիստական մրցության էնտուզիաստներ, որոնք արդեն կատարել ու գերակատարել են հնգամյա պլանով սահմանված արտադրանքի իրենց անձնական նորմաները։

Մեծ համբավ են վայելում աշխատանքի սոցիալիստական մեթոդների վարպետները, որոնց թվումն են Ավտոդողերի գործարանի ստախանովական Բախշիման Գիշյանը, Մոլոտովի անվան Մանվածքային ֆաբրիկայի մանող Անգին Արսենյանը, էլեկտրամեքենա-



շինական գործարանի դազգահագործ Լենդրոշ Ղամբարյանը, Զանգեզուրի հանքվարչության հորատող Արամ Խաչատրյանը, մեքենավար Գարեգին Աբաշյանը և շատ ուրիշներ, որոնք գտնվելով մրցողների առաջին շարքերում, բարձր արտադրողական աշխատանքի օրինակներ են տալիս։

1948 թվականի առաջին կիսամյակում ձեռք բերված հաջողությունները հնարավորություն են տալիս ոչ միայն կատարելու, այլև գերակատարելու հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները կարող են զգալիորեն բարձրացնել արտադրության տեմպերը։ Սակայն շատ գործարաններում ու ֆաբրիկաներում եղած սարքավորումը օգտագործվում է դեռևս ոչ լրիվ կարողությամբ։ Խնդիրն այն է, որ յուրաքանչյուր ձեռնարկությունում ամենակարճ ժամանակամիջոցում հայտնաբերվեն և այս տարվա արտադրական պլանների ժամկետից շուտ կատարմանն իսպառ դրվեն արտադրական կարողությունների բոլոր ռեզերվները և արտադրանքի թողարկումն ավելացնելու բոլոր լրացուցիչ հնարավորությունները՝ արտադրության տեխնոլոգիական պրոցեսները բա-

րելավելու և սարքավորման արտադրողականությունը բարձրացնելու միջոցով։ Հենց այդ ձեռնարկումներն էլ պետք է հիմք ծառայեն աշխատանքի արտադրողականության հետագա աճման և արտադրական պլանների գերակատարման համար։

Ռեսպուբլիկայի շատ ձեռնարկություններ արդեն հաջողությամբ իրագործում են այդ միջոցառումները և զգալիորեն բարձրացրել են արտադրանքի թողարկումը։ Օրինակ կարող է ծառայել Մուլիտի գործարանի կոլեկտիվը, որը բարձրացնելով արտադրական կարողությունների օգտագործման մակարդակը, առաջին կիսամյակի պլանը գերակատարեց 63 տոկոսով։ Արտադրական կարողությունների լավագույն օգտագործման ասպարեզում զգալի հաջողություններ են ձեռք բերել Կաբելի և Ավտոդողերի գործարանների կոլեկտիվները։ Տեխնոլոգիան բարելավելու ուղղությամբ մեծ աշխատանք է կատարված Դազգահաշինական գործարանում, որն արդեն 1948 թվականին մետաղամշակման դազգահների արտադրությամբ կհասնի հնգամյա պլանով 1950 թվականի համար սահմանված մակարդակին։ Ապակե տարայի գործարանում կիսաավտոմատի սարքավորման և արտադրության տեխնոլոգիան բարե-



լավելու շնորհիվ արդեն այս տարվա հունիսի պլանը գերակատարվեց 63 տոկոսով։

Այս օրինակներն ակնառու կերպով ցույց են տալիս, թե ինչպիսի հսկայական հնարավորություններ կան արտադրության տեմպերը բարձրացնելու համար, ի հաշիվ կարողությունների ռեզերվների օգտագործման և արտադրության տեխնոլոգիայի բարելավման։

Արտադրության տեմպերի բարձրացումը մեծ չափով կախված է շինարարության աշխատողներից, որոնք մի շարք դեպքերում ձգձգում են նոր արտադրությունների գործարկումը։ Հետպատերազմյան ստալինյան հնգամյակի երրորդ տարվա վճռական խնդիրներից մեկն է շինարարական ինդուստրիայի հետամնացության վերացումը։ Անհրաժեշտ է արագացնել նոր արտադրական կարողությունների շահագործման հանձնելը և ամենաարագ կերպով յուրացնել պլանավորված արտադրանքի թողարկումը։

Արտադրության տեմպերը բարձրացնելու հետ միաժամանակ անհրաժեշտ է ամեն կերպ բարելավել արտադրանքի որակն ու հետագայում իջեցնել ինքնարժեքը, որը կապահովի շահութաբերության բարձրացումը և

արդյունաբերության մեջ սոցիալիստական կուտակումների ուժեղացումը։

Արտադրության տեմպերի հետագա բարձրացման գործում մոտակա ամիսների կարեվորագույն խնդիրներից մեկն է ստեղծել այն բոլոր պայմանները, որոնք անհրաժեշտ են 1948—1949 թ. թ. ձմեռային շրջանում արդյունաբերության և տրանսպորտի անընդմեջ աշխատանքն ապահովելու համար։ Գործարանների ու ֆաբրիկաների, տրանսպորտային կազմակերպությունների և ռեսպուբլիկայի շինարարությունների կոլեկտիվները պետք է իրենց ձեռնարկությունները նախապատրաստեն առաջիկա ձմռան համար այն հաշվով, որ ոչ մի դեպքում չթուլացվի արտադրության տեմպերի իջեցում։

Այս բոլոր խնդիրների հաջող լուծման համար մեր ագիտատորներից պահանջվում է բոլշևիկյան խոսքով և անձնական օրինակով օգնել արդյունաբերական ձեռնարկությունների, տրանսպորտի ու շինարարական կազմակերպությունների կոլեկտիվներին մոբիլիզացնելու իրենց բոլոր ուժերը, որպեսզի նրանք է՛լ ավելի լայնորեն ծավալեն սոցիալիստական մրցությունը, արժանավայել, արտադրական նորանոր հաղթանակներով դիմավորեն Մեծ Հոկտեմբերի 31-րդ տարեդարձը։

---

# ՍՍՌՄ-Ը ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՄԵԾ ՏԵՐՈՒԹՅՈՒՆ Է

Ամեն տարի, ի նշանավորումն 1935 թվի հուլիսի 30-ին Կրեմլում երկաթուղային տրանսպորտի աշխատողների ընդունելության, նշվում է Երկաթուղայինի ստալինյան օրը որպես համաժողովրդական մեծ տոն։

Երկաթուղային տրանսպորտի աշխատողների ընդունելության ժամանակ իր արտասանած ճառում ընկեր Ստալինը, տալով ՍՍՌՄ-ում երկաթուղային տրանսպորտի համապետական մեծ նշանակությունը, ասաց, որ ՍՍՌՄ-ը որպես պետություն աներևակայելի է առանց առաջնակարգ երկաթուղային տրանսպորտի, որը կապում է երկրի բազմաթիվ մարզերն ու շրջանները մի միասնության մեջ։

Սովետական Միության տերիտորիայում, որը կազմում է 22,3 միլիոն քառակուսի կիլոմետր, սովետական էկոնոմիկայի վերելքը կախված է տրանսպորտի, առանձնապես

երկաթուղային տրանսպորտի զարգացման
աստիճանից:

Սովետական Ռուսաստանը անցյալից ժա-
ռանգություն ստացավ ամբողջապես քայ-
քայված և տեխնիկապես հետամնաց տր-
րանսպորտ: Ստալինյան երեք հնգամյակնե-
րի տարիներին, սոցիալիստական վերակա-
ռուցման հիման վրա, երկաթուղային տր-
րանսպորտը դարձավ ՍՍՌՄ ժողովրդական
տնտեսության առաջավոր ճյուղերից մեկը:

ՍՍՌՄ-ը երկաթուղային տրանսպորտի
մեծ տերություն է: Երկաթուղային ճանա-
պարհների տարածությունը ՍՍՌՄ-ում 1913
թվականի 58.500 կիլոմետրից 1940 թվին
հասավ 105.300 կիլոմետրի: Երկաթուղային
տրանսպորտը տեխնիկական արմատական
վերակառուցման ենթարկվեց: 1940 թվին,
համեմատած 1920 թվի հետ, ապրանքաշըր-
ջանառությունն աճեց 36 անգամ: Եթե 1913
թվին օրական միջին բեռնումը կազմում էր
27,4 հազար վագոն, ապա 1940 թվին այն
հասավ 97,9 հազարի:

Հերոսությամբ ու փառքով իրենց պսակե-
ցին երկաթուղային տրանսպորտի աշխա-
տողները Հայրենական Մեծ պատերազմի
տարիներին:



Հետպատերազմյան նոր հնգամյակում
երկաթուղային տրանսպորտը ոչ միայն լրի-
վին վերականգնելու է իր մինչպատերազ-
մյան հզորությունը, այլև հասնելու է նոր
զարգացման: Բավական է նշել, որ նոր
հնգամյակում երկաթուղային տրանսպորտի
գծով կապիտալ աշխատանքների ծավալը
կազմելու է 40,1 միլիարդ ռուբլի: Հնգամ-
յակի ընթացքում կառուցվելու են երկա-
թուղային նոր գծեր՝ 7.230 կիլոմետր ընդ-
հանուր երկարությամբ, էլեկտրիֆիկացվելու
է 5325 կիլոմետր երկաթուղի: Երկաթուղա-
յին տրանսպորտը հագեցվելու է առաջնա-
կարգ շարժական կազմով և սարքավորու-
մով:

Մեր՝ երկաթուղայիններիս, խնդիրն է
հնգամյակի վերջին տարում՝ 1950 թվին
ապահովել օրական միջին բեռնումը 115.000
վագոնի չափով:

Համաժողովրդական մեծ պայքարը՝
ստալինյան հնգամյա պլանը կատարել 4
տարում, դարձավ նաև երկաթուղայինների
մարտական ծրագիրը: Հսկայական չափով
աճում է արդյունաբերության մեջ արտա-
դրանքի ծավալը, սոցիալիստական գյու-

ղատնտեսությունը տալիս է առատ պարենամթերք ու հումք, լայնորեն ծավալվում է ապրանքաշրջանառությունը։ Այդ ամենը երկաթուղային տրանսպորտից պահանջում են ապահովել մեր ժողովրդական տնտեսության աճող պահանջները, արագ և անխափան փոխադրել բեռները։

Մտնելով Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, երկաթուղայինները պարտավորվեցին երկաթուղային տրանսպորտի հնգամյա պլանը բոլոր գծերով կատարել չորս տարում՝ 1949 թվին։ Դա մեր երկաթուղայինների մարտական առաջադրանքն է, մեր պատվի ու փառքի գործը։ Ինչպես պետք էր սպասել, երկաթուղայինները պատվով են կատարում մեծ առաջնորդին տված իրենց խոստումը։ Հնգամյակի առաջին երկու տարում՝ երկաթուղում միջին բեռնումը աճեց 23 տոկոսով, իսկ 1948 թվի առաջին կիսամյակում, 1947 թվի առաջին կիսամյակի համեմատությամբ, 34 տոկոսով։

Հայրենասիրական մեծ գործերով են դիմավորում Երկաթուղայինի ստալինյան օրը Անդրկովկասի երկաթուղու, այդ թվում և նրա Երևանի բաժանմունքի աշխատողները։ Ծավալելով սոցիալիստական մրցությունը, մեր բաժանմունքի բոլոր աշխատողները



պայքարում են այս տարվա տարեկան պլանը կատարել ժամկետից շուտ՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի 31-րդ տարեդարձի նախօրյակին։ Երկաթուղայինի ստալինյան օրը մեր բաժանմունքի բազմաթիվ աշխատողներ դիմավորում են իրենց տարեկան և հնգամյա պլանի կատարումով։ Համաժողովրդական մեծ պայքարում աշխատանքի բարձր արտադրողականության հասան բազմաթիվ երկաթուղայիններ, աճեց տեխնիկայի նորարարների մի ամբողջ բանակ, որոնք իրենց հայրենասիրական գործերով արժանացել են մեր բաժանմունքի աշխատողների և ժողովրդի սիրուն։

Մեծ հաջողությունների են ձեռք բերել Երևանի բաժանմունքի շոգեքարշայինները։ Միայն հունիս ամսին նրանք պլանից դուրս փոխադրել են 4500 տոննա բեռ։ Պատվով են կատարում իրենց խոստումը ավագ մեքենավարներ Աբաջյանը, Հարությունյանը, Խաչատրյանը։ Լենինական կայարանի գնացքների վերականգնման աշխատողներ Բաղդասարյանը, Հարությունյանը, Հովակիմյանը և Գրիգորյանը աշխատանքից դուրս իրենց ազատ ժամանակի ընթացքում վերանորոգել են 10 վագոն՝ հացահատիկի նոր

բերքի փոխադրության համար։ Երևանի ուղեմասի աշխատողներ Գրիգորյանը, Հովսեփյանը, Բաղդասարյանը, Մարտիրոսյանը, Սաթոյանը, Խաչատրյանը, Թադևոսյանը և ուրիշները, աշխատելով արագացված մեթոդով, գծի նորոգման պլանը կատարեցին 310 տոկոսով։ Երևան կայարանի Գ. Ա. Լևոնյանի ղեկավարած հերթափոխի օրինակելի աշխատանքի շնորհիվ, նրանք բեռնման ու բեռնաթափման հունիս ամսվա պլանը կատարեցին 143,5 տոկոսով։

Այժմ մեր առաջ կանգնած է առաջնահերթ պետական կարևորագույն նշանակություն ունեցող մի խնդիր՝ արագ և անխափան կերպով փոխադրել ստալինյան հնգամյակի երրորդ տարվա նոր բերքը։

Կենսագործելով ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի Փետրվարյան պլենումի որոշումները, մեր ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը աճեցրել է հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների հարուստ բերք։ Մեր խնդիրն է՝ ամենասեղմ ժամկետում և անկորուստ փոխադրել կոլխոզային դաշտերի առատ բերքը։ Դա մեր բաժանմունքի աշխատողների պատվի գործն է։ Դրա համար անհրաժեշտ է արագացնել վագոնների շրջանառությունը, արագ բարձել և



բեռնաթափել, հացահատիկի փոխադրման համար հատկացնել պիտանի վագոններ, բարելավել գծի ընթացիկ վիճակը և կայարաններում ու գծում աչքի լույսի պես պահպանել հացահատիկի բեռները։ Չպետք է մոռանալ, որ փոխադրումների ճկուն կազմակերպումից մեծապես կախված է հացամթերման հաջող կատարումը և արդյունաբերական կենտրոններում իր ժամանակին պարենամթերքների պաշարների ստեղծումը։

Միաժամանակ պահանջվում է ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը, արմատավորել ստախանովյան աշխատանքի վարպետների հարուստ փորձը, իջեցնել ինքնարժեքը, կատարել հումքի, էլեկտրաէներգիայի ամենախիստ խնայողություն, նոր թափ հաղորդել ռացիոնալիզացմանը։

1948 թվականին երկաթուղայինների անհետաձգելի խնդիրն է՝ արագացնել վագոնի շրջանառությունը և հասցնել այն մինչև 8,4 օրվա։ Դրա համար անհրաժեշտ է կրճատել վագոնների պարապուրդները տեխնիկական կայարաններում՝ բեռնման և բեռնաթափման տակ, արագացնել գնացքների առևտրական արագությունը։

Առաջիկա ձմեռը երկաթուղայինների համար հանդիսանում է վճռական շրջան և ընտանում է բացառիկ կարևոր նշանակություն։ Այն բանից, թե ինչպես մենք շոգեքարշային և վագոնային պարկերը, գիծը, կապը և երթևեկությունը բազմակողմանիորեն կնախապատրաստենք ձմռանը, կախված է երկաթուղային տրանսպորտի անխափան աշխատանքը 1948—1949 թ. թ. ձմեռվա ընթացքում և հետագայում հնգամյա պլանի կատարումը 4 տարում։

Լենինի-Ստալինի փառապանծ պարտիայի կողմից դաստիարակված սովետական երկաթուղայինները լավ են գիտակցում, որ երկաթուղային տրանսպորտը որքան լավ բավարարի երկրի ժողովրդական տնտեսության աճող պահանջները, մեր ժողովուրդը այնքան արագ կկատարի ստալինյան նոր հնգամյա պլանը, դրանով իսկ մեր Հայրենիքը կդառնա է՛լ ավելի հզոր, մեր սովետական մարդիկ կապրեն է՛լ ավելի լավ և կուլտուրական։

Լ. ՆԱՎԱՍԱՐԴՈՎ

(Անդրկովկասյան երկաթուղային ճանապարհների Երևանի բաժանմունքի պետ, քարշի 3-րդ կարգի գեներալ-դիրեկտոր)

---



## ԳՅՈՒՄՈՒՇԻ ՀԻԴՐՈԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԻ ԱՐԱԳ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Հայաստանը հարուստ է ջրա-էներգետիկ ռեսուրսներով, այդ պատճառով էլ մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման մեջ առաջնակարգ և բացառիկ կարևոր նշանակություն ունի ջրային էներգիան, որովհետև ռեսպուբլիկան համարյա չունի էներգիայի այլ աղբյուրներ։ Ջրա-էներգետիկ խոշոր աղբյուրներից մեկն է Սևանի լիճը։ Նա գտնվում է ծովի մակերևույթից 1916 մետր բարձրության վրա, գրավում է 1410 քառակուսի մետր տարածություն և Միության մեջ բարձր լեռնային ամենամեծ լիճն է։ Սևանի լճի և Հրազդան գետի ջրերի օգտագործումը էներգետիկ և իրրիգացիոն նպատակների համար հնարավորություն կտա ստեղծելու մի հզոր էներգոսիստեմ, որի հիման վրա կզարգանան ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսությունը, մասնավորապես արդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպես քիմիական, ալյումինի և այլն, որոնք

պահանջում են և շատ, և էժան էլեկտրաէներգիա։

ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիան երկար տարիներ շարունակ ուսումնասիրեց Սևանի լճի պրոբլեմը և դրա հիման վրա կազմեց լճի ջրերի դարավոր պաշարների օգտագործման սխեման, որի համաձայն այդ ջրերը խպաս են դրվելու մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության ու գյուղատնտեսության։

Սևանի լճի ջրերի օգտագործմամբ հոյակապ հեռանկարներ են բացվում մեր երկիրը էլեկտրակայանների ցանցով պատելու և էլեկտրիֆիկացնելու տեսակետից։ Ահա այս իմաստով Սևանի լճից հոսող Հրազդան գետի ամբողջ երկարությամբ կառուցվելու է էլեկտրակայանների մի ամբողջ շարք, որոնց կարողությունը համարյա հավասար է լինելու Դնեպրոգէսին, իսկ ջուրը ոռոգելու է տասնյակ հազարավոր հեկտար նոր արգավանդ հողեր։

Հրազդան գետի վրա կառուցվող յոթ էլեկտրակայաններից առաջինը՝ Քանաքեռգէսի էլեկտրակայանը դեռևս 1936 թվից հանձնված է շահագործման։ Ավարտվում է Սևանի կասկադի երկրորդ էլեկտրակայանի շինարարու-



թյունը։ Ստալինյան նոր հնգամյա պլանով նախատեսված է կասկադի երրորդ ամենահզոր կայանի՝ Գյումուշգէսի շինարարությունը, որի կարողությունը գրեթե երկու անգամ ավելի է լինելու Հայաստանի բոլոր էլեկտրակայանների սահմանված կարողությունից և երկու անգամ ավելի էլեկտրաէներգիա է մատակարարելու մեր ժողովրդական տնտեսությանը։

Գյումուշի էլեկտրակայանը բաղկացած է հիդրո-տեխնիկական կառուցվածքների բարդ կոմպլեքսից, որի կազմի մեջ մտնում են ամբարտակը, որը արգելակելով Հրազդան գետը, ստեղծելու է մի հսկայական ջրամբար։ Նրա թումբը Սովետական Միության մեջ ամենախոշորն է։ Կառուցվելու է գեներատորային շենք և այլ հիդրոտեխնիկական կառուցվածքներ։

Գյումուշգէսի շինարարության ճակատը տարածվելու է ավելի քան 50 կիլոմետրի վրա։ Չափազանց մեծ է աշխատանքների ծավալը ստալինյան հնգամյակի այդ վիթխարի նորակառույցում։ Բավական է միայն նշել, որ կատարվելու է 2 միլիոն խորանարդ մետր հիդրո-տեխնիկական հիմնական կառուցվածքների հողային և ժայռային աշխա-

տանք և այն էլ ծովի մակերևույթից 1500-1700 մետր բարձր դժվարամատչելի լեռնային տեղանքում: Բետոնային և երկաթ-բետոնային աշխատանքները կազմելու են ավելի քան 700 հազար խորանարդ մետր: Թե որքան շինանյութ է ծախսվելու էլեկտրակայանի շինարարության վրա, պարզ պատկերացում կարող են տալ հետևյալ թվերը: Գյումուշգէսի շինարարության վրա ծախսվելու է 120 հազար խորանարդ մետր անտառանյութ, 200 հազար տոննա ցեմենտ և 20 հազար տոննա մետաղ:

Շինարարության վրա զբաղվելու են մոտ 10 հազար բանվոր՝ զինված հարյուրավոր զանազան տեսակի մեխանիզմներով, ավտոմեքենաների, վագոնների, վագոնետների ու տրակտորների մեծ պարկով:

Գյումուշգէսի հիդրոկայանի շինարարության հետ սերտորեն կապված է նաև բանվորական խոշոր ավանների կառուցումն ու զարգացումը: Այդ ավանները օժտված են լինելու բանվորների կուլտուր-կենցաղային սպասարկման բոլոր հարմարություններով, ունենալու են բաղնիքներ, լվացքատներ, մանկա-մսուրներ, ակումբներ, խանութներ, ճաշարաններ, հացի փռեր և այլ անհրաժեշտ



կառուցումներ: Այդպիսի խոշոր ավաններ են կառուցվելու Աղփարայում, Ալափարսում և Արքելում, էլեկտրակայանի գլխամասային ու կայարանային հանգույցների տեղադրման շրջաններում:

Գյումուշի էլեկտրակայանի շինարարության համար բազմաքանակ բեռները ժամանակին ստանալու նպատակով կառուցվում է Երևան—Ախտա 58 կիլոմետր երկարությամբ երկաթուղագիծ: Այդ երկաթուղին, որը հասցվելու է Սևան, ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն է ունենալու մեր ռեսպուբլիկայի համար, որովհետև երկաթուղին Սևանի ավազանը տնտեսական տեսակետից ավելի սերտորեն կկապի Ախտայի, Կոտայքի և այլ շրջանների հետ:

Գյումուշգէսի շինարարության ամբողջ բարդությունը միայն դրանով չի սահմանափակվում: Նա պետք է իր ուժերով և միջոցներով մեծ քանակությամբ մետաղե կոնստրուկցիաներ պատրաստի հիդրոտեխնիկական կառուցվածքների համար: Պետք է պատրաստվեն շինարարական մեխանիզմների պահեստի մասեր, կատարվեն բոլոր տեսակի սարքավորումների նորոգումներ, մշակվի տարեկան մոտ 100 հազար խորա-

նարդ մետր անտառանյութ, կազմակերպվի պեմզա-բլոկների արտադրությունը։ Ահա այդ նպատակով Ալափարսի տեղամասում կառուցվելու են նորոգման-մեխանիկական, պեմզա-բլոկի գործարաններ և ողնձարան։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշմամբ Գյումուշգէսի շինարարների կոլեկտիվը այս տարի կառուցելու և շահագործման է հանձնելու Երևան-Էլլար երկաթուղագիծը, էլեկտրահաղորդման 110 կիլովոլտ բարձրավոլտ գիծը և 9 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն՝ համապատասխան կուլտուր-կենցաղային շինություններով։ Այդ վիթխարի աշխատանքների ծավալումը ապահովելու համար այս տարի ավարտվելու են նաև շինարարության առանձին հանգույցների մատույցաբեր ճանապարհները, շինարարության բոլոր տեղամասերը ապահովվելու են ջրով և ապա հուլիս ամսին սկսվելու է նաև թունելի անցկացումը։

Գյումուշգէսի կոլեկտիվը պատվով է կատարում իր պարտքը երկրի հանդեպ։ Նշենք միայն, որ նա շինարարության կես տարվա պլանը կատարել է ժամկետից շուտ՝ հինգ ամսում, աշխատանքների ինքնարժեքը իջեցրել է 13,5 տոկոսով և արտադրողականությունը հասցրել է 112 տոկոսի։ Արդեն ա-



վարտվում են երկաթուղամիջի կառուցման հողային և ժայռային աշխատանքները, ինչպես նաև Երևան-Էլլար հատվածում արհեստական կառուցվածքների շինարարությունը։ Շինարարությունների շուրջը արդեն աճում են կառուցողների համար բնակելի տներ։ Այս տարվա հինգ ամսվա ընթացքում դրված են 3.500 քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ 40 տան հիմքերը և բարձրացված են պատերը։ Այդ բնակելի տները բանվորներին կհանձնվեն հուլիս-օգոստոս ամիսներին։ Բնակելի տների կառուցման հետ զուգընթաց կառուցվում են ճաշարաններ, խանութների, բաղնիքների և կուլտուր-կենցաղային սպասարկման այլ օբեկտների շենքերը։ Աշնանը ավարտվելու են Ցանտան— № 7 ավան (Լուսավան) և Ճաղրուան № 9 ավան (Առքել) ճանապարհները, ինչպես նաև շինարարական տեղամասերը ապահովվելու են ջրով ու էլեկտրաէներգիայով։ Հիմնական կառուցվածքների՝ ջրնետման, միացուցիչ ջրանցքի և № 1 թունելի մատույցի կառուցման հողային և ժայռային աշխատանքներն արդեն սկսվել և շարունակվում են ուժեղ թափով։

Մեծ է Գյումուշգէսի կոլեկտիվի աշխատանքային խանդավառությունը։ Խորապես

զգալով պարտիայի և կառավարության կողմից իրենց առջև դրված չափազանց պատասխանատու խնդիրները, կառուցողները ջանք չեն խնայում աշխատանքի բարձր արտադրողականությամբ կատարելու արտադրական պլանները։

Այդ խանդավառությանը մեծապես խթանում է եղբայրական ադրբեջանական ռեսպուբլիկայի խոշորագույն էլեկտրակայանի՝ Մինգեչաուրգէսի կառուցողների կոլեկտիվի հետ կնքված սոցմրցման պայմանագիրը։ Ահա երկրորդ տարին է, որ այդ երկու խոշորագույն նորակառույցների կոլեկտիվները սոցիալիստական մրցություն են ծավալել ստալինյան նոր հնգամյակի երրորդ վճռական տարվա պլանները ժամկետից շուտ կատարելու համար։

Կառուցման այդ վիթխարի աշխատանքներում օրեցօր խտանում են պանծալի կառուցողների՝ ստախանովականների շարքերը։ Իրենց ստախանովյան լավագույն աշխատանքով առանձնապես աչքի են ընկնում Գյումուշգէսի շինարարության Ախտայի տեղամասից հողափորներ Խ. Միքայելյանը, Գ. Խարբերդյանը, արմատուրագործներ Ա. Նավոյանը, Թունելագործ Ա. Ղազարյանը, Էյլարի տեղամասից հողափորներ Հ. Մովսիսյանը Վ. Նալ-



բանդյանը, Ս. Դանիելյանը, Ա. Մեսրոպյանը, Վ. Հակոբյանը և շատ ուրիշները, որոնք բարձր պահելով սոցիալիստական մրցության դրոշը, իրենց կիսամյա պլանները կատարել են 150-200 տոկոսով։

Հանրածանոթ է, որ Սովետական Միության վիթխարի կառուցումների՝ ասենք Դնեպրոգէսի, Զապորոժգէսի և այլ կառուցումների շինարարությունը կատարվել է ոչ միայն կառուցողների հերոսական ջանքերով, այլև սովետական ժողովրդի ցուցաբերած ամենաակտիվ մասնակցությամբ։ Մեր եղբայրական ռեսպուբլիկաներում համաժողովրդական նշանակություն ունեցող հսկա էլեկտրակայանների կառուցման օրինակով, վստահ ենք, որ Հայաստանի աշխատավորները ևս, խորապես գիտակցելով Գյումուշգէսի շինարարության կարևորագույն նշանակությունը մեր ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման գործում, իրենց ամենաակտիվ մասնակցությունն ու աջակցությունը ցույց կտան այդ հզոր էլեկտրակայանի արագ կառուցմանն ու գործարկմանը։

Գ. ԱՂԱԲԱԲՈՎ

(Գյումուշգէսշինի պետ)

# Ո՞ՐՆ Է ՄԵՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ «ԳԱՂՏՆԻՔԸ»

Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքը զգալի չափով կախված է կոլխոզային գյուղի էլեկտրիֆիկացումից։ Գյուղատնտեսական պրոցեսների էլեկտրիֆիկացումը մեզ կտա բանվորական ուժի հսկայական խնայողություն և միաժամանակ կբարձրացնի կոլխոզնիկների կուլտուր-կենցաղային սպասարկման մակարդակը։

ՀԿ(բ)Պ Կենտկոմի 32-րդ պլենումը Հայաստանի կոլխոզների էլեկտրիֆիկացման պլանի մասին իր պատմական որոշման մեջ պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է համարում մեր ռեսպուբլիկայի կոլխոզների համատարած էլեկտրիֆիկացումը ստալինյան նոր հնգամյակում։

Պարտիայի առաջադրած այդ վիթխարի խնդիրը հաջողությամբ կատարելու համար Երևանի Գյուղգործիքների գործարանի միկրոգէսների ցեխում սահղծվեց աշխատան-



քային անօրինակ աշխուժություն։ Մեր մարտական խնդիրն է՝ արտադրել ավելի ու ավելի մեծ թվով միկրոգէսներ, մեր ռեսպուբլիկայի էներգիայի գլխավոր աղբյուրների՝ գետերի ու գետակների, ջրվեժների ու սահանքների վրա տեղավորել փոքր հիդրոկայաններ։

Սակայն միայն աշխատանքային եռուն տեմպերը մեզ չէին կարող բավարարել։ Պետք է գտնեինք նոր ուղիներ, որոնցով կարելի լիներ բարձրացնել աշխատանքի արտադրողականության մակարդակը, նվաճել բարձր ցուցանիշներ ինքնարժեքի իջեցման ասպարեզում։

Մեր ցեխում դանդաղ էր ընթանում միկրոգէսի «գրուզ» կոչվող մասի մշակումը, որովհետև նրա տեղավորումն ու իջեցումը դազգահի վրա խլում էր 20 րոպե։ Այդ ժամանակը հիմնովին կրճատվեց, երբ մենք դազգահի վրա ամրացրինք մի հարմարանք, որը իր էությամբ թեև հասարակ է, սակայն միանգամայն արագացնում է մշակման բարդ պրոցեսը։ Այս նորամուծությունը կիրառելու շնորհիվ, մենք ամրացումն ու իջեցումը 20 րոպեի փոխարեն կատարում ենք կատարել մեկ րոպեում։ Դեռ ավելին. նույն հարմարանքը մեզ օգնեց մետաղահատման արա-

գուլֆյունը բազմապատկելու և մենք այժմ «գրուզը» պատրաստում ենք ոչ թե 5 ժամում, ինչպես նախատեսվում է պլանով, այլ 15—20 րոպեում։

Միկրոդէսի զսպանակը սեղմող յուրաքանչյուր քանոնի պատրաստման համար երկու բանվոր աշխատում էին 5 և կես ժամ։ Այժմ այդ հարմարանքի կիրառումով նույն աշխատանքը մի մարդ կատարում է 20 րոպեում։ Սեղմող քանոնի առաջադրանքը մենք այժմ կատարում ենք 800—1000 տոկոսով։

Մշակվող մետաղյա կտորը դազգահի վրա բռնվում և ամրացվում է կապիճ կոչվող գործիքով։ Այս գործիքը ունի 3 ատամ, որոնք երբեմն կոտրվում են և դազգահը կանգ է առնում։ Անհրաժեշտ էր նոր կապիճներ որոնել և տեղադրել, իսկ մենք կապիճները ստանում էինք միութենական եղբայրական ռեսպուբլիկաներից, որովհետև չէինք արտադրում։ Այսպես 4 դազգահ շարքից դուրս եկան ու անգործունեության մատնվեցին՝ կապիճների մի ատամը կոտրված լինելու պատճառով։

Երկարատև ջանքերից հետո մենք կարողացանք պատրաստել սեփական կապիճներ,



որոնց շնորհիվ բոլոր դազգահներն էլ այժմ անխափան են աշխատում։

Բացի վերև նշված նորամուծություններից մենք կիրառեցինք տեխնոլոգիական և աշխատանքային կարգապահության խիստ միջոցառումներ։ Նախքան աշխատանքը սկսվելը, պատրաստ վիճակում ենք պահում տաշող, փորող և կտրող գործիքները։

Անակնկալ խափանումների հետևանքով առաջանում էր պարապուրդ. խափանումները մեզնից խլում էին 2—3 և շատ անգամ նույնիսկ 5 աշխատանքային ժամ։ Պարապուրդները կանխելու համար մենք նախքան գործի ձեռնարկելը ուշադիր ստուգում ենք մեր դազգահի ու հարակից գործիքների ծածկված մասերը։ Այսպիսով ապահովեցինք մեր դազգահի անխափան ու արդյունավետ աշխատանքը, որի հետևանքով նվազագույն չափի հասցրինք աշխատանքային ժամերի վատնումները։

Արտադրական պրոցեսների ռացիոնալիզացումը, աշխատանքային նոր մեթոդների կիրառումն ու արմատավորումը, աշխատանքային ժամերի արտադրողաբար օգտագործումը— ահա մեր հաջողությունների «գաղտնիքը»։

Մեր գործարանի պարտիական կազմա-

կերպությունը լայնորեն մասսայականացրեց մեր ռացիոնալիզատորական հաջողությունները, ագիտկոլեկտիվը բոլոր բանվորներին հասցրեց մեր փորձը։ Բազմաթիվ բանվորներ, յուրացնելով մեր առաջարկությունները, հասան մեծ ցուցանիշների։

Վերջերս մենք քննարկեցինք Լենինական քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատողների դիմումը՝ հնգամյակի վճռական տարվա պլանը նոյեմբերի 7-ին կատարելու մասին։ Մեր ցեխի կոլեկտիվը, ձգտելով ավելի շատ միկրոզչներ տալ սոցիալիստական գյուղատնտեսությանը, միահամուռ կերպով մտավ Մեծ Հոկտեմբերի 31-րդ տարեդարձի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ և պարտավորվեց իր տարեկան արտադրական պլանը կատարել նոյեմբերի 7-ին։

Իսկ մենք խոստացել ենք հասնել ավելի ակնբախ ցուցանիշների։ Այժմ մենք աշխատում ենք 1960 թվականի հաշվին և մեր աշխատանքային տեմպերը գտնվում են անընդհատ զարգացման մեջ։

ՍԻՐԱԶՆԻԿ ԵՎ ՀՐԱԶՆԻԿ
ԶՈՐԲԱՆՅԱՆՆԵՐ
(Երևանի Գյուղգործիքների գործարանի միկրոզչների ցեխի ստախանովական խառատներ)



## ՏԱՆՁԱՏԱՓ ԳՅՈՒՂԻ ԱԳԻՏԿՈԼԵԿՏԻՎԻ ՓՈՐՁԻՑ

Մասսայական-քաղաքական աշխատանքները գյուղում առանձնահատուկ նշանակություն են ստանում այժմ, բերքահավաքի շրջանում։ Մեր գյուղական ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ բոլշևիկյան կենդանի խոսքով և անձնվեր աշխատանքով մոբիլիզացնել կոլխոզային գյուղացիության ուժերը բերքը ժամանակին ու անկորուստ հավաքելու, պետական պարտավորությունները սրբությամբ կատարելու համար։

Այդ տեսակետից ուսանելի են Գորիսի շրջանի Տանձատափ գյուղի պարտկազմակերպության ագիտկոլեկտիվի աշխատանքները (ղեկավար ընկ. Վ. Հարությունյան)։ Այստեղ կոլխոզի պարտիական կազմակերպության նիստում քննե, և հաստատել են խոտհնձի ու բերքահավաքի ժամանակ ագիտատորների քաղաքական-մասսայական աշխատանքների պլանը։ Ագիտկոլեկտիվի ղեկավարը, որ միաժամանակ պարտկազմակերպության քարտուղարն է, ագիտատորնե-

րի համար ամսական 2—3 անգամ կազմակերպում է սեմինար խորհրդակցություններ, հաճախ տալիս է հրահանգավորում և մեթոդական ցուցումներ, ստուգում նրանց աշխատանքները, լսում նրանց. հաշվետվությունները պարտժողովներում և ագիտկոլեկտիվի խորհրդակցություններում։

Գյուղի բոլոր աշխատավորները մասնակցում են ագիտատորների կողմից կազմակերպվող զրույցներին և ընթերցանություններին։ Կոլխոզնիկները մեծ սիրով են լսում ագիտատորներին, նրանք իրենց հետաքրքրող հարցերը պարզաբանում են ագիտատորների զրույցների ժամանակ։ Իրենց զրույցները ավելի մատչելի և հետաքրքիր դարձնելու համար ագիտատորները նախօրոք մշակում, պլանավորում են անցնելիք նյութերը, հաշվի են առնում ունկնդիրների կրթական մակարդակը, նրանց ավելի շատ հետաքրքրող և չպարզաբանված հարցերը։ Իրենց աշխատանքների ընթացքում նրանք օգտագործում են քաղաքական ագիտացիայի բոլոր ձևերն ու միջոցները՝ թերթերը, «Ագիտատորի բլոկնոտը», կոլխոզի պատի թերթը, բրիգադային և օղակային խլիչովկաները, ֆոտո-թերթը, ցուցադրական ագիտացիան և այլն։



Ագիտկոլեկտիվը իր սեմինար խորհրդակցություններում քննել է նաև սոցմրցությունն ու հարվածայնությունը կոլխոզում, առաջավոր բրիգադաների, օղակների և կոլխոզնիկների փորձը և նրա մասսայականացումը, ագիտատորների անելիքները բերքահավաքի ընթացքում և այլ թեմաներ։

Քաղաքական-մասսայական աշխատանքների շնորհալի կազմակերպումը օգնեց կոլխոզնիկներին. այս տարի գարնանը կոլխոզը ժամկետից շուտ ու բարձր որակով ավարտեց բոլոր տեսակի կուլտուրաների ցանքը և կազմ ու պատրաստ դիմավորում է գյուղատնտեսական աշխատանքների ամենապատասխանատու ու վճռական շրջանը՝ բերքահավաքը։

Այժմ ագիտատորները բրիգադաներում, օղակներում մասսայականացնում և պարզաբանում են ՍՍՌՄ Մինիստրների Սովետի որոշումը «Կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին»։

Ագիտկոլեկտիվը կազմակերպել է շրջիկ գրադարան խոտհնձի դաշտերում։ Ագիտատորները դաշտերում հանգստի ժամերին ա-

*մենօրյա զրույցներ և ընթերցանություններ են կազմակերպում հնձվորների համար, նրանք բրիգադաներում. օղակներում և ֆերմաներում լույս են ընծայում խլլիկներ, խրախուսում են առաջավորների փորձը։ Դաշտավարական 1-ին բրիգադայի 2-րդ օղակի ագիտատոր Հ. Ալեքսանյանը հերթական զրույցի ժամանակ, կոլտնտեսականներին ծանոթացնելով ՀԿ(բ)Պ Կենտկոմի 32-րդ պլենումում ընկ. Գրիգորյանի «Հայաստանի կոլխոզների էլեկտրիֆիկացման պլանի մասին» զեկուցմանը, մեծ հետաքրքրությամբ պատմում էր, որ մինչև 1949 թվի աշունը իրենց կոլխոզը կստանա էլեկտրական լույս։ Նա ցույց էր տալիս, որ դա մեծ չափով կըթեթևացնի կոլտնտեսականների աշխատանքը, էլեկտրական լույս կլինի կոլտնտեսականների բնակարաններում, դպրոցում, ակումբում, գյուղի փողոցներում, գոմերում, իսկ 1950 թվին գյուղում կլինեն ստացիոնար կինո, ռադիոհանգույց, էլեկտրականությամբ կաշխատեն ջրաղացը և այլ արտադրական օբեկտներ։*

*Կոլխոզում ագիտատորների օգնությամբ սիստեմատիկաբար ստուգման է ենթարկվում բրիգադաների, օղակների և կոլտնտեսականների վերցրած պարտավորությունների կատարման*



*ընթացքը։ Այժմ մեծ ծավալ է ստացել սոցմրցությունը։ Խոտհնձի ժամանակ կոլխոզի 1-ին, 2-րդ դաշտավարական բրիգադաները օրվա պլանները կատարում են 150—180 տոկոսով։ Այս բրիգադաների բոլոր աշխատողները գերակատարում են իրենց օրվա առաջադրանքները։ Ագիտատորները, հետևելով սոցմրցության ընթացքին, նրա արդյունքները ժամանակին հայտնում են բրիգադաներին, օղակներին, մրցողներին։ Այդ նպատակով նրանք լայնորեն օգտագործում են նաև ցուցադրական ագիտացիայի ձևերն ու միջոցները։ Նրանք մրցության արդյունքները, բացի խլլիկներում և պատի թերթերում հրապարակելուց, փակցնում են նաև կոլխոզի առաջավորների, պատվո, սևի տախտակների վրա։ Ագիտատորներն իրենց զրույցների ընթացքում լիովին օգտագործում են տեղական փաստերը, քաղաքական ագիտացիան սերտորեն զուգակցելով կոլխոզի արտադրական խնդիրների հետ։ Նրանք միաժամանակ աշխատավորությանը ծանոթացնում են ՍՍՌՄ-ի միջազգային դրությանը, Սովետական կառավարության իմաստուն արտաքին քաղաքականությանը և պարտիայի ու կառավարության որոշումներին։*

Ն. ՍԱՀԱԿՅԱՆ

**ԱԳԻՏԱՏՈ՛Ր. ԴԱՇՏՈՒՄ, ԿՈԼԽՈԶԻ ԲՐԻԳԱԴԱՅՈՒՄ՝ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ, ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅԱՆ, ԿՈՐՈՒՍՏՆԵՐԻ ԴԵՄ ՊԱՅՔԱՐԻ ՄԱՍԻՆ ԶՐՈՒՅՑՆԵՐ ԱՆՑԿԱՑՆԵԼԻՍ, ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ՍՏՈՐԵՎ ՇԱՐԱԴՐՎԱԾ ՆՅՈՒԹԵՐԸ։**

«Բերքահավաքը սեզոնային գործ է և նա չի սիրում երկար սպասել. հավաքեցիր ժամանակին՝ շահեցիր, ուշացար բերքահավաքում՝ տանուլ տվիր»։

ՍՏԱԼԻՆ

***

*Պայքարը բերքահավաքի ժամկետի կրճատման համար, պայքար է կորուստների դեմ։ Հաշվված է, որ ցորենը ժամանակին հնձելու դեպքում կարելի է տնտեսել մեկ հեկտարից առնվազն 2 փութ։ Միայն Հայկական ՍՍՌՄ-ում այդպիսի տնտեսումը պետությանը լրացուցիչ կտա մի քանի հարյուր հազար փութ հացահատիկ։*



***

*Հայկական ՍՍՌ կոլտնտեսականները, կոլխոզնիկուհիները, սովխոզների ու ՄՏ կայանների աշխատողները և գյուղատնտեսության մասնագետները ընկեր Ստալինին գրած նամակում խոստացել են բոլոր ջանքերը գործադրել մեր գյուղատնտեսությունն է՛լ ավելի մեծ ծաղկման հասցնելու համար։ Ռեսպուբլիկայի առաջավոր կոլխոզները, հազարավոր բրիգադաներ և օղակներ առաջնորդին խոսք են տվել՝ աննախընթաց հաջողությունների հասնել սոցիալիստական հողագործության բերքատվությունը և հանրային անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու ասպարեզում։ Նրանք պարտավորվել են յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքել 150—200 փութ հացահատիկ, 300—510 փութ բամբակի հումք, 100—150 փութ ծխախոտ, 3000—4200 փութ շաքարի ճակընդեղ, 160—200 ցենտներ խաղող։*

*Անասնապահության առաջավորները խոսք են տվել յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալ 2000—3000 լիտր կաթ և լիովին պահպանել ստացած մատղաշը։*

***

«Ով չի աշխատում նա չի ուտում»։

ԼԵՆԻՆ

***

«Սոցիալիզմը պահանջում է ո՛չ թե լոդրություն անել, այլ այն, որ բոլոր մարդիկ աշխատեն ազնվորեն, աշխատեն ո՛չ թե ուրիշների համար, ո՛չ թե հարուստների ու շահագործողների համար այլ իրենց համար, հասարակության համար»:

ՍՏԱԼԻՆ

***

*Բերիայի շրջանի Նորագավիթ գյուղի «Նոր ուղի» կոլխոզը անցյալ տարի ստացավ 3 միլիոն դրամական եկամուտ: Կոլխոզնիկները իրենց յուրաքանչյուր աշխօրին ստացան 30 ռուբլի դրամով, 3 կիլոգրամ հացահատիկ, 1 կիլոգրամ խաղող, 2 կիլոգրամ բանջարեղեն և անասնակեր:*

***

«Երբ բոլոր կոլխոզնիկները,—բոլորը, և ոչ միայն մեծամասնությունը,— աշխատեն ազնվորեն,— կոլխոզները կլցվեն մթերքներով, նրանք կլցվեն բոլոր բարիքներով,և մեր երկիրը կլինի ամենահարուստ երկիրը աշխարհում» (ՍՏԱԼԻՆ):

***

«Բոլշևիկները իրավունք չունեն խուսափելու սույն հարցադրումից, երբ գործը վերաբե-



րում է մի քանի կոլխոզներում եղած լոդրերի, պարազիտային տարրերի, աշխատանքի հասարակական կարգապահության խախտողների, հանրային սեփականության հափշտակիչների դեմ մղվող պայքարին, այսինքն բոլոր նրանց դեմ, ովքեր նստած են ազնիվ կոլխոզնիկների վզին, ովքեր խանգարում են կոլխոզին արագորեն շարժվելու առաջ: Բոլշևիկը չի կարող բոլորի նկատմամբ բարի լինել, նա պարտավոր է պաշտպանել ամեն մեկին, ով ազնվորեն աշխատում է կոլխոզում, և համարձակորեն պայքար ծավալել, կոլխոզային մասսայի մեջ առաջ բերել զայրույթ ծրիակերների և հանրային բարիքը հափշտակողների դեմ»:

*(Ն. Ս. Խրուշչևի՝ Ուկրաինայի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումում 1948 թ. մայիսի 5-ին տված զեկուցումից):*

---

Միջազգային թեմաներ

## ՉԻՆԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱ-ԱԶԱՏԱԳՐԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Չինաստանի ժողովրդա-ազատագրական բանակի գլխավոր շտաբի կողմից հրապարակված կոմունիկեն հաղորդում է, որ Չան Կայ-շին հունիս ամսին կորցրել է 155,950*

զինվոր ու սպա, ըստ որում գերի է վերցված 87,180 մարդ։

Հունիս ամսվա ընթացքում ժողովրդա-ազատագրական բանակի զորքերը ազատագրել են 42 գավառական քաղաք։

Գերի է վերցված գոմինդանական 10 գեներալ, որոնցից վեցը պատկանել են գոմինդանական կանոնավոր բանակին։

Գոմինդանական 66-րդ և 17-րդ դիվիզիաների հրամանատարներ գեներալներ Լի Ջժան-դին և Խոու-ֆու-չժուն սպանվել են մարտերի ժամանակ։

Գոմինդանական կանոնավոր զորքերի ջախջախված զորամասերի թվում են երկու դիվիզիա, 2 բրիգադ, 10 գունդ և 8 գումարտակ։ Գոմինդանական ոչ կանոնավոր զորքերի ջախջախված զորամասերի թվում են՝ 4 լրիվ բրիգադ, 13 լրիվ գունդ և 32 լրիվ գումարտակ։ Ընդհանուր առմամբ այդ կազմում է դիվիզիոնային 2 շտաբ, 55 գունդ և 2 գումարտակ։

Գրավված են հետևյալ ռազմանյութերը. 1096 հրետանային հրանոթ, որոնց թվում 53 ռակետային թնդանոթ, 12 զենիթային հրանոթ, 24 քիմիական մորտիր և 14 հակատանկային հրանոթ, 2727 թեթև գնդացիր, 257 ծանր գնդացիր, 4.418 պիստոլետ-գնդացիր,



84.078 հրացան և կարաբին, 3102 պիստոլետ, ավելի քան 9 միլիոն փամփուշտ, ավելի քան 31 հազար արկ, ավելի քան 41 հազար ձեռքի նռնակ, 51 մոտոցիկլ։

## ԳՈՐԾԱԴՈՒԼԱՅԻՆ ՇԱՐԺՄԱՆ ԱՃԸ ՀՆԴԿԱՍՏԱՆՈՒՄ

Հնդկական մամուլում հրապարակվել են 1947 թ. և 1948 թ. առաջին եռամսյակի գործադուլային շարժման մի քանի արդյունքներ։ 1948 թվին Հնդկաստանում տեղի է ունեցել 1.811 գործադուլ, որոնց մասնակցել են 1.840.780 բանվոր։ 1947 թվին, 1946 թվի համեմատությամբ գործադուլների քանակը ավելացել է 13,7 տոկոսով, իսկ մարդ-օրվա կորուստը՝ 30,6 տոկոսով։

Տևողության և պայքարի համառության տեսակետից գերազանցում է Բուկինգըէմի և Կարնատակի (Մադրասի պրովինցիա) բանվորների գործադուլը։ Այդ գործադուլը շարունակվել է 3 ամիս։ Գործադուլային շարժումը ավելի լայն ծավալ է ստացել տեքստիլ արդյունաբերության մեջ։ 1947 թվի սեպտեմբերից մինչև 1948 թվի մարտ ամիսը տեղի է ունեցել 1.182 գործադուլ։ Դրանից ավելի քան 25 տոկոսը առաջ է եկել առաջին անհրաժեշտության իրերի գները բարձրացնելու հետևանքով ռեալ աշխատավարձի անկման և պրուստը թանկանալու պատճառով։

# ԱՄՆ-Ի ԵՐՐՈՐԴ ՊԱՐՏԻԱՆ

Նոյեմբերի 2-ին Ամերիկայի Միացյալ Նահանգներում տեղի կունենան պրեզիդենտի ընտրությունները։ Այդ օրը կընտրվեն նաև ներկայացուցիչների պալատի բոլոր անդամները և սենատի կազմի մեկ երրորդը։ Չնայած որ մինչև ընտրությունները մոտ չորս ամիս կա, բայց նախընտրական կամպանիան արդեն լրիվ թափով ծավալվել է։

Անցած տարիների իրադարձությունները շատ նոր բան մտցրին այս տարվա ընտրական կամպանիայի մեջ։ Նախորդ ընտրությունների ժամանակ պայքար մղվում էր գլխավորապես ամերիկյան երկու հին պարտիաների՝ ռեսպուբլիկական ու դեմոկրատական պարտիաների միջև։ Այդ պարտիաներից յուրաքանչյուրի ներքին ու արտաքին քաղաքականությունը, չնայած նրանց անունների տարբերությանը, փաստորեն ոչնչով չի տարբերվում, և նրա նպատակն է խոշոր կապիտալիստների տիրապետության հետագա ամրապնդումը։ Իզուր չէ, որ մեծ թվով ընտրողներ խուսափում էին ընտրություններին մասնակցելուց, այսպես դատելով. վերջ ի վերջո միևնույն չէ՝ կընտրեն ավանակի օգտին, թե՞ փղի։ Դրանք երկուսն էլ միևնույն գազանանոցից են։ (Ավանակը պատկերված է դեմոկրատա-



կան պարտիայի պաշտոնական էմբլեմի վրա, իսկ փիղը՝ ռեսպուբլիկականների էմբլեմի վրա)։

Այս տարի իբրև ակտիվ ուժ ընտրական կամպանիայի մեջ է մտնում արագորեն աճող երրորդ պարտիան՝ ԱՄՆ-ի պրոգրեսիվ ուժերի քաղաքական պարտիան։ Այդ պարտիայի կողմից իբրև պրեզիդենտության թեկնածու հանդես է գալիս հանգուցյալ պրեզիդենտ Ֆրանկլին Ռուզվելտի բարեկամն ու օգնականը՝ Հենրի Ուոլլեսը։

Տասներեք տարի շարունակ հաջորդաբար գրավելով հողագործության մինիստրի, փոխպրեզիդենտի, առևտրի մինիստրի պոստերը, Ուոլլեսը հենվում էր շարքային ամերիկացու վրա, պրոգրեսիվ կազմակերպությունների հետ համագործակցության վրա։ Իր գործունեության մեջ նա անփոփոխ կերպով պաշտպանում է խաղաղության և ժողովուրդների անվտանգության քաղաքականությունը։ Ուոլլեսը ամերիկյան քաղաքականության ռուզվելտյան կուրսի հետևողական կողմնակիցն է։

1946 թվականի սեպտեմբերին Ուոլլեսը Նյու-Յորքում տեղի ունեցած մի միտինգում հանդես եկավ ճառով, որի մեջ վճռականորեն դատապարտեց ներկայիս ամերիկյան կառավարության քաղաքականությունը, ՍՍՌՄ-ի դեմ պատերազմի պրոպագանդան։ Նա խիստ դատապարտեց ԱՄՆ-ի կառավարող շրջանների արտաքին քաղաքականության ագրեսիվ բնույթը, կոչ արեց պաշտպանել խաղաղությունը, միջազգային սերտ համագործակցությունը։

Ուոլլեսի այդ համարձակ ձայնը մեծ ծառայություն մատուցեց խաղաղության գործին։ Այդ ձայն էլ հենց նրա հեղինակին զրկեց ԱՄՆ-ի առևտրի մինիստրի պոստից։

Ուոլլեսը հրաժարական տվեց, բայց զենքը ցած չդրեց։ Նա դարձավ «Նյու ռիպաբլիկ» առաջադիմական ժուռնալի խմբագիր և էլ ավելի հաստատակամորեն շարունակեց պայքարը հանուն խաղաղության, հանուն դեմոկրատիայի։ Նա բազմաթիվ ուղևորություններ կատարեց երկրում, հանդես գալով մասսայական միտինգներում ու ժողովներում։

1947 թվականի դեկտեմբերի վերջերին Հենրի Ուոլլեսը հանդես եկավ ամերիկյան ժողովրդին ուղղված ռադիոդիմումով։ Նա ընդգծեց, որ երկրում թագավորում է երկյուղի և անվստահության զգացմունքը, որ դեմոկրատների ու ռեսպուբլիկականների միջև ըստ էության տարբերություն չկա։ Թե՛ մեկը և թե՛ մյուսը,— ասում էր նա,— «կողմնակից են այնպիսի քաղաքականության, որը բաց է անում պատերազմի դուռը մեր կենդանության օրով և պատերազմն անխուսափելի է դարձնում մեր երեխաների համար»։

Ուոլլեսն առաջարկեց ԱՄՆ-ում ստեղծել երրորդ պարտիա և հայտարարեց, որ ինքը վճռել է առաջիկա ընտրությունների ժամանակ իր թեկնածությունն առաջադրել պրեզիդենտության համար։ Այդ կապակցությամբ նա առաջադրեց իր ծրագիրը, որի օգտին կոչ է անում քվեարկելու ամերիկյան ընտրողներին։ Այդ ծրագրի հիմնական տարրերն են՝ խաղաղության



պաշտպանությունը և անվտանգության ապահովումը, Սովետական Միության հետ ԱՄՆ-ի բարեկամության և համագործակցության ամրապնդումը։ Ծրագիրը ամերիկացիներին կոչ է անում պայքարել ամերիկյան ժողովրդի դեմոկրատական իրավունքների վերականգնման համար, ռասսայական դիսկրիմինացիան (իրավունքների նվազեցումը) ոչնչացնելու համար, շուկայական ցածր գներ սահմանելու, աշխատանքի ապահովման և բնակարանային պայմանները բարելավելու համար։

Անկախ այս տարվա պրեզիդենտական ընտրությունների արդյունքներից, Ուոլլեսը և նրա կողմնակիցները նոր պարտիան դիտում են իբրև ԱՄՆ-ի առաջադիմական ուժերի մշտական քաղաքական կազմակերպություն։ Այդ կազմակերպությունը պետք է, նրանց կարծիքով, ընդունակ լինի կայուն դիմադրություն ցույց տալու ռեակցիոն ուժերի հարձակմանը և ամուր պաշտպանելու ամերիկյան ժողովրդի դեմոկրատական ազատությունները։

Երրորդ պարտիայի ստեղծման օգտին սկսված շարժումը լայն թափ ստացավ։

Հանրահայտ է, թե կոնստիտուցիոն կարգի ինչպիսի հսկայական դժվարությունների հետ է կապված ԱՄՆ-ում նոր պարտիայի կազմակերպումը։ Նրա դեմ օգտագործվում են նահանգների ընտրական օրենքները։ Այդ օրենքներն ունեն մեկ ընդհանուր գիծ — դրանք պահպանում են ամերիկյան կեղծ դեմոկրատների «երկպարտիական» սիստեմը (այսինքն՝ միայն դեմոկրա-

տական և ռեսպուբլիկական պարտիաների կողմից թեկնածուներ առաջադրելու իրավունքը)։ Ընտրություններին իրենց թեկնածուների առաջադրման իրավունք ունենալու համար նոր պարտիայի կողմնակիցները պարտավոր են հավաքել նրա ծրագիրը պաշտպանող ընտրողների հարյուր հազարավոր ստորագրություններ։ Բայց բանը դրանով չի սահմանափակվում։ Նոր պարտիայի գոյությունը հաճախ վիճարկվում է դատարանի կողմից։ Օկլահոմա նահանգի գերագույն դատարանը, օրինակ, օրերս հրաժարվեց Ուոլլեսին պաշտպանող պրոգրեսիվ պարտիան օրինական ճանաչելուց։ Այդ նշանակում է, որ Օկլահոմա նահանգում երրորդ պարտիային իրավունք չի տրված մասնակցելու առաջիկա ընտրություններին։

Չնայած այս բոլոր խոչընդոտներին, ԱՄՆ-ի երրորդ քաղաքական պարտիան հունիսի կեսերին արդեն համարվեց ստեղծված և հասավ այն բանին, որ նա այժմ 29 նահանգներում արդեն մտցված է նախընտրական ցուցակների մեջ։ Մեծ աշխատանք է կատարվում այդ պարտիան մյուս նահանգներում ևս ձևակերպելու համար։

Երրորդ պարտիայի ազգային կոմիտեի մեջ, որն ունի 700 անդամ, մտնում են ականավոր քաղաքական գործիչներ, պրոֆմիութենական ղեկավարներ, ամերիկյան բանվորական պարտիայի, Համալսարանական կոնգրեսի ներկայացուցիչներ, գիտության, գրականության և արվեստի գործիչներ։

Կոմիտեի ղեկավար կազմի մեջ են գտնվում Չիկա-



գոյի համալսարանի պրոֆեսոր Տագուելլը, հայտնի քանդակագործ Դավիդսոնը, հռչակավոր նեգր երգիչ Փոլ Ռոբսոնը և այլ առաջադիմական գործիչներ։

Հուլիսի 24-ին նշանակված է երրորդ պարտիայի ազգային համագումարը, որը պետք է պաշտոնապես առաջադրի Միացյալ Նահանգների պրեզիդենտի և փոխպրեզիդենտի պոստերի թեկնածուներ առաջիկա ընտրությունների համար։ Համագումարը պետք է նաև հաստատի այն ծրագիրը, որով նոր պարտիան հանդես է գալիս ընտրություններին։

Երրորդ պարտիայի կազմակերպման և Ուոլլեսին պրեզիդենտ ընտրելու խնդրին աջակցություն է վայելում պրոֆմիությունների շատ անդամների կողմից, քաղաքական ու հասարակական առաջադիմական կազմակերպությունների շրջանում։ Երրորդ պարտիայի ստեղծման օգտին ծավալված շարժումը պաշտպանող ուժերն զգալի են։ Դրանք ամերիկյան աշխատավոր ժողովրդի ներկայացուցիչներն են՝ բանվորները, ֆերմերները, ծառայողները, առաջավոր ինտելիգենցիան— բոլոր նրանք, ովքեր բողոքում են ԱՄՆ-ի ներկայիս կառավարող շրջանների ռեակցիոն ներքին ու արտաքին քաղաքականության դեմ։

Երրորդ պարտիայի ստեղծման ուղղությամբ կատարվող աշխատանքի մեջ առանձնակի ակտիվություն է ցուցաբերում «Ամերիկայի պրոգրեսիվ քաղաքացիները» կազմակերպությունը, որն ըստ էության նրա կորիզն է հանդիսանում։

Երրորդ պարտիային եռանդուն կերպով պաշտպա-

նում է նաև ամերիկյան աշխատավորների ամենաառաջավոր մասը՝ ԱՄՆ-ի կոմպարտիան։ Ամերիկյան կոմպարտիայի գլխավոր քարտուղար Դեննիսի հայտարարությամբ. կոմպարտիայի շարքերը ներկայումս համախմբված են ավելի, քան երբևիցե։ Նրա թվական կազմն աճել է հատկապես Նյու-Յորքի, Կալիֆորնիայի, Նյու-Ջերսիի, Կոննեկտիկուտի շրջաններում։ Կոմպարտիան հաջողությամբ միասնական ճակատի քաղաքականություն է վարում խաղաղության և դեմոկրատիայի համար մղվող պայքարում, չնայած կոմունիստների դեմ ռեակցիայի ցասումնալից արշավանքին։

Երրորդ պարտիան արհամարհելու քաղաքականությունից, Ուոլլ-ստրիտի (Նյու-Յորքի այն փողոցը, որտեղ գտնվում են խոշոր բանկերը) պարագլուխները անցան Ուոլլեսի կողմնակիցների դեմ տեռորի քաղաքականությանը։ Նրանց հեռացնում են աշխատանքից, բանտ են նետում, ծեծում և սպանում են։ Հենց այդպես էլ պատահեց մասսայական պրոֆմիութենական գործիչ Ռոբերտ Նյուլի հետ։ Նա մայիսի սկզբներին Չարլստոն քաղաքում սպանվեց ռեակցիոն տարրերի կողմից այն բանի համար, որ դարձել էր «Ուոլլեսին պրեզիդենտ ընտրելու տեղական կոմիտեի» նախագահ։ Սենատոր Թեյլորը, որի թեկնածությունը երրորդ պարտիայի կողմից առաջադրվում է փոխպրեզիդենտի պոստի համար, ծեծի ենթարկվեց ու ձերբակալվեց, երբ ելույթ էր ունեցել



ԱՄՆ-ի հարավային նահանգներից մեկում։ Պրոֆեսոր Պարկերը հեռացվեց Էվանսվիլլի կոլեջից միմիայն այն բանի համար, որ նախագահել էր Ուոլլեսի կողմնակիցների նախընտրական միտինգում։

Բայց, չնայած Ուոլլեսի կողմնակիցների հետապնդմանը, նոր պարտիայի անդամների շարքերը օրեց-օր աճում են։ Հենրի Ուոլլեսի անվան հետ են կապված միլիոնավոր պրոգրեսիվ ամերիկացիների հույսերը։

Ինչպիսի արդյունքներ էլ որ ունենան ընտրությունները, ռեակցիայի ուժերի դեմ երրորդ պարտիայի պայքարը նպաստում է ԱՄՆ-ի խոշոր կապիտալի հակաժողովրդական, ագրեսիվ քաղաքականության մերկացմանը, դեմոկրատիայի ուժերի ամրապնդմանն ու համախմբմանը, այն ուժերի, որոնք պայքարում են հանուն հաստատուն խաղաղության, հանուն միջազգային համագործակցության, ընդդեմ իմպերիալիստական ավանտյուրիստների ու պատերազմի հրձիգների։

Վ. ԿՈՐՆԵՎ

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

ՎՖ 03946 Պատվեր № 504 Տիրաժ 9.100

Ստորագրված է տպագրության 27/VII 1948 թ.

Պոլիգրաֆ. և Հրատ. Վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

Блокнот Агитатора

